# Միշիկի «հետևողական գիծը»

Հենց վոր Միշիկը պիոներ դարձավ, նա տանը սկսեց «հետևողական գիծ» տանել։

1.

— Ի՞նչ ես աղայի նման լուսամուտի մոտ պառկել։ Դու չէի՞ր, վոր վայնասուն էիր բարձրացրել, թե այնքան դաս են տալիս, վոր մի շաբաթում էլ չես կարող սովորել։ Յերեկ դպրոցական խորհրդում ընկեր Թվաբանությունը գանգատվում էր ինձ քո մասին։ Ասում էր, թե յետ ես մնում... Նստիր, դասերդ սովորիր։

Միշիկը վեր է թռչում իր տեղից։

Միշտ պատրաստ եմ, Այո, իհարկե, դասերը պետք է պատրաստել Բայց միայն...

— Միայն ի՞նչ։

— Բա զեկուցո՞ւմս ինչ անեմ։ Վաղը կոլլեկտիվում զեկուցում ունեմ «էլեկտրիֆիկացիայի և մաշինիզացիայի մասին»։

— Ո՛, տեր աստված։

— Յես, մայրիկ, հենց էնպես չէ, վոր պառկել եմ։— Յես մտածում եմ։ Մի՞թե ինձ համար մեծ հաճույք կլինի զեկուցման ժամանակ խայտառակվել։

Իսկ ո՞վ է այդ տղան, կհարցնեն, վոր էլեկտրիֆիկացիայից վոչինչ չգիտի։— Միշիկն է Իսկ ո՞ւմ տղան է Միշիկը — Մի՞թե չգիտեք. կին պատգամավորուհի Արևհատի։ Ա՛, ստեղ է ահա խայտառակությունը։ Իսկ դասերի համար, ի հարկե... միշտ պատրաստ եմ։

— Պառկիր. պառկիր։ Գլխիդ տակը գոնե բարձ դիր։ Հեշտ բան հո չի՞ այդպիսի բաների մասին մտածելը։

2.

Միշիկ, տես, նավթի լամպա յեմ գնել։ Մեր դռան առաջ յերեկոները շատ մութն է լինում։ Յեկ մի խփիր դռան ճակատին, յերեկոյան վառենք։

— Մի՛շտ պատրաստ եմ։ Բայց... վոչ մի կերպ հնարավոր չէ։

— Իսկ ինչո՞ւ։

— Մայրիկ, մի լավ մտածիր մի՞թե կարելի յե. չէ՞ վոր նավթի լամպա յե։

— Այո. նավթի յե։ Դրանի՞ց ինչ

— Հենց այդ է վոր կա։ Վո՞րն է սոցիալիզմի ուղին։ Էլեկտրիֆիկացիան։ Այդպե՞ս է։

— Այդպես է.

— Յենթադրենք, վոր յես այդ ամրացնում եմ, և հանկարծ այդ նկատեց ինչ վոր անցորդ։ Իսկ ո՞վ է այդ հերոսը, կհարցնի նա, վորը փոխանակ Լենինականը էլեկտրիֆիկացիայի յենթարկելու, նավթիֆիկացիայի յե յենթարկում։— Միշիկն է. կին-պատգամավորուհի Արևհատի վորդին։ Էլ ի՞նչ պիոներ է նա, յերբ էլեկտրիֆիկացիայի փոխարեն հին կենցաղն է պատին ամրացնում։ Սակայն, սիրելի մայրիկ, մեկ է ինձ համար, տուր մուրճիկը. յես կամրացնեմ։

— Չէ, տղաս, դե վոր այդպես է, յես ինքս կամրացնեմ.

3

— Միշիկ, փորիր և մի մարգ պատրաստիր գազարի համար։

— Միշտ պատրաստ եմ. Իսկ ինչո՞վ փորեմ։

— Այ տղա, իսկ չե՞ս իմանում, թե ինչով են փորում։ Բահով։

— Բահո՞վ։ Իսկ մի՞թե այդ յեղավ։ Կարդացե՞լ ես դու գյուղական տնտեսության մեքենայացման մասին վորոշումը։

— Չէ, չեմ կարդացել։

— Ահա, տեսնո՞ւմ ես։ Յես սկսեցի փորել։ Յեվ հետո ի՞նչ կասեն մարդիկ—թե տեսեք, պիոներ Միշիկը, կին պատգամավորուհի Արևհատի վորդին, փոխանակ Ֆորդզոն տրակտորով հողը վարելու, բահով է հողը մշակում։ Հարկավոր է նրան հեռացնել կազմակերպությունից, վորովհետև վոչ գիտակից վերաբերմունք է ցույց տալիս դեպի տրակտորիզացիան։ Դուք գիտեք, յեթե ստիպում եք ինչ արած, կփորեմ։ Տվեք բահը։

— Ի՞նչ հարազատ մայրդ քո թշնամի՞ն է, ինչ է։ Գնա ազատ պառկիր։ Յես մի կերպ կաշխատեմ, կվերջացնեմ.

4. 5, 6, 7, 8, 9, 10, 11 ՅԵՎ ԱՅԼՆ

Յեվ այսպես կշարունակվեր յեթե մեկ անգամ Միշիկի մայրը չհանդիպեր կոլվարին և նրա հետ չխոսեր իր սիրելի Միշիկի մասին։

— Իմ Միշիկն այսպես է, իմ Միշիկն այնպես։ Յեվ այն չի անում, և այս չի անում Մի խոսքով վոչինչ չի անում.

Սկսվեցին Միշիկի համար անախորժությունները։ Յեվ տանը վարած Միշիկի «հետևողական գիծը» վերջացավ և կոլեկտիվը ցույց տվեց Միշիկին, թե վորն է պիոների հետևողական գիծն ընտանիքում։

«Пионер»-ից

digitised by A.R.A.R.@

ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԻ

Բանվոր դասակարգի պայքարում, պիոնե՛ր, պատրա՛ստ.

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՕՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏԲՅՈՒՐՈՅԻ ՅԵՎ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏԻ

Խմբագրության հասցեն—Յերեվան, Ռուբենի № 2

№ 3 № 3

## ԳԵՐՄԱՆԱՑԻ ՊԻՈՆԵՐ ՀԵՆՐԻԽԻ ԶՎԱՐՃԱԼԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ ԻՐ ՀԱՅՐԵՆԻ ՔԱՂԱՔՈՒՄ



1



2




3




4

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՆՑ ԽՈՍՔԵՐԻ, ԿԱՄ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆ ԻՆՔՆԵՐԴ ՇԱՐԱԴՐԵՑԵՔ

digitised by A.R.A.R.@



# ՉԱԼԱՆԿԸ



ՊԱՏՄՎԱԾՔ ՍՏ. ԶՈՐՅԱՆԻ

Շատ բան կարելի յե պատմել շների մասին, բայց այն, ինչ ուզում եմ պատմել—վերաբերում ե առ այժմ մեր շանը, վորը վաղուց արդեն չկա։

Մեր Չալանկը մի սև, բրդոտ շուն եր՝ կուրծքն ու վիզը ճերմակ, վոր հեռվից թվում եր սպիտակ վզկապ։ Փոքրուց նրա ականջներն ու պոչը կտրել եին, այդ պատճառով ամառը սաստիկ տանջվում եր ճանճերի ձեռից. հողը փոս եր անում—մեջը պառկում, կամ ժամերով մտնում եր թփերի ու լոբիների մեջ, և դուրս եր գալիս այն ժամանակ միայն, յերբ անծանոթ վոտնաձայն եր լսում բակում կամ անցնող շան հոտ եր առնում։ Զարմանալի չեր սիրում մուրացկաններին. կարծես վոխերիմ թշնամի լիներ։ Հաչում եր նրանց վրա սարսափելի յեռանդով, կատաղությամբ ու աշխատում եր ամեն կերպ վնասել նրանց։ Բայց, դրա փոխարեն, անտարբեր եր դեպի լավ հագնված մարդիկ... Հաչում եր նրանց վրա այնչափ, վոր իմացնի, թե մարդ ե գալիս.. Իսկ բյոխվի կամ գզրի վրա իսկի չեր ել հաչում. մի յերկու բերան «հաֆ» եր անում կլանչելու պես ու մռռոցով քաշվում մի կողմ։ Վախենում եր...

Յես այն ժամանակ չեի հասկանում դրա պատճառը, բայց հիմա մտածում եմ, վոր Չալանկը, յերևի, ընդօրինակում եր մեզ. ինչ վերաբերմունք մենք ունեինք դեպի մարդիկ, նույնն ուներ յեվ նա։ Մենք մուրացկաններին չեինք սիրում, չեր սիրում յեվ նա. բյոխվից յեվ գզրից վախենում եինք—վախենում եր յեվ Չալանկը...

Դրան հակառակ—մենք սիրում եինք մեր տավարին—սիրում եր յեվ նա... Յեթե պատահեր, օրինակ, մեր յեզներն առանց հսկողի մնային դաշտում, Չալանկը կմնար նրանց մոտ, նույնիսկ առավոտից մինչև յերեկո կհսկեր քաղցած, յեվ յերեկոյան միայն, յերբ յեզները գային տուն—նա ել հետները կգար...

Կամ, օրինակ, մայրս հավերին կուտ եր տալիս. պատահում եր, վոր հավերի մեջ լինում եին հարևանի հավեր։ Մայրս՝ «տտա՛ր, տտա՛ր» ասելով՝ քշում եր դրանց, վոր մերոնց կուտը չխլեն... Չալանկը, վոր լավ ճանաչում եր մեր հավերին, յերբեմն, յերբ մայրս չեր նկատում օտար հավերին—ինքը ցատկում եր կուտ ուտող հավերի մեջ յեվ «օտարներին» քշում,—ընկնում եր նախ մեկի յետևից, թրթռացնելով հալածում եր նրան այս ու այն կողմ. հանգստանում եր միայն, յերբ նրան թռցնում եր ցանկապատի մյուս կողմը։ Հետո գալիս եր մյուսներին...

Ձմեռը հայրս Չալանկին կապում եր մեր գոմի չարդախում, հենց գոմի դռան առաջ, ուր հայրս յերեկոները խոտ եր դնում նրա համար, վոր տեղը փափուկ ու տաք լինի։ Հայրս Չալանկին գոմի դռանը կապում եր նրա համար, վոր գող գալու դեպքում իմացնի, վորովհետև գոմը գտնվում եր մեր տնից բավական հեռու։ Յեթե պատահեր, դուռը կոտրեին յեվ ամբողջ տավարը տանեին—չեինք իմանա։

—Քնածն ու մեռածը մին ա,—ասում եր հայրս յեվ միշտ զգուշացնում, վոր յեթե ինքը, պատահեց, տանը չեղավ, մենք չմոռանանք Չալանկին կապել գոմի չարդախում։

digitised by A.R.A.R.@

Յեվ, պետք է ասած, Զալանկի պատճառով՝ թե նրա անից, մեր գոմից բան չէր գողացվում։ Հայրս համոզված էր, որ մի բան պատահելիս, Զալանկը հաչոցով կիմացներ։ Իսկ Զալանկը յերբեք սուտ չէր հաչում... Դա արդեն հայտնի էր։

Ու ահա, ձմրան մի գիշեր, յերբ մեր տանը բոլորս խոր քնած էինք—հանկարծ զարթեցինք ինչ-որ տարօրինակ ձայներից։ Մեկը դիպչում էր մեր դռնով, չանգռում էր այն յեվ ինչ-որ, մռմռոցի նման, ձայներ հանում։

Ամենից առաջ զարթեցինք յես ու մայրս։ Հայրս, սովորաբար, խոր էր քնում. մինչեվ չհրեիր—չէր զարթնի։ Մի քանի անգամ ականջ դնելով այդ տարօրինակ ձայներին, մայրս զարթեցրեց հորս։

—Տես մի էն ի՞նչ է, որ դուռը չանգռում է,—ասաց։

Այդ րոպեին դռան չանգռոցը կրկնվեց. նորից դիպավ դռանը յեվ լսվեց զսպված կլանչոց։

—Շունն ա՞—հարցրեց հայրս տարակուսած, անկողնում նստելով։ Ապա վեր կացավ, արխալուղը քցեց ուսերին ու գնաց դեպի դուռը։

Բայց մայրս չթողեց դուռը բանալ։

—Կատաղած շուն կըլի, աման, բաց մի անի...

Հայրս նայեց լուսամուտից, բայց բան չնկատելով, լուսամուտի մի փեղկը բաց արավ ու գլուխը դուրս հանեց։

—Դե կորի՛,—պոռաց նա յեվ, յետ դառնալով, ասաց.—մեր շունն է. կապը կտրել է...

—Բա խի՞ յե դուռը չանգռում,—ասաց մայրս։ Չըլնի՞ սոված է։

—Չէ հենց իրիկունը, գոմը փակելուց հետո յեմ հաց տվել,—ասաց հայրս յեվ ավելացրեց։—Ո՛վ գիտի, գելի հոտ է առել, վախից կապը կտրել. դեսն է յեկել...

Ու հայրս, ուսերին քցած արխալուղը մի կողմ դնելով, ուզում էր անկողին մտնել. յերբ շունը, որ լռել էր, նորից դիպավ դռան ու կլանչեց։

—Չէ՛. սա, իսկ որ, գելի հոտ է առել,—կրկնեց հայրս։—Վախից կլանչում է...

Ու նորից բարկացավ նրա վրա.

—Դե կորի՛, անպետքը...

Զալանկն ընդհատեց կլանչոցը, բայց նորից դռնովը դիպավ։

—Քեզ պես հազարն ըլի, յես ցրտին դուրս չեմ գա,—ասաց հայրս ու մտավ անկողին։

Շունը, դռան յետեվից, կարծես զգաց այդ բանը, յեվ ավելի անհանգստացավ. սկսեց դարձյալ կլանչել յեվ թաթը քսել դռանը... կլանչում էր. թաթը քսում դռան ու մի առժամ լռում, սպասում։ Տեսնելով՝ ձայն չենք տալիս—շարունակում էր իր չանգռոցն ու կլանչը։

Յերբ դա շատ կրկնվեց, հայրս էլ չհամբերեց. վեր կացավ բարկացած յեվ, առանց փոքրեվն բան քցելու ուսերին, դուռը բաց արավ, դռան յետեվը դրված ձեռնափայտը վերցրեց յեվ...շանը.

—Այ քեզ, քոսոտ անտեր...

Շունը, կլանչելով, փախավ։

Հայրս նորից տուն յեկավ, դուռը փակեց յեվ մտավ անկողին։



Յես, ճրագը ձեռին, հետեվեցի նրան

— Կատաղել ա, չի թողնում մարդ քնի,—ասաց բարկացած։

Բայց նորից հազիվ անկողին էր մտել—շունը դարձյալ յեկավ՝ դռնովը դիպավ ու կլանչեց։ Հայրս ուզում էր էլի բարկանալ, բայց այս անգամ մայրս խորհուրդ տվեց—վեր կենալ տեսնել՝ ի՞նչ է պատահել։

- Ես շունն իսկի եսպես չի արել։ Չըլնի գոմը գող է մտել,—կասկած հայտնեց նա։

—Յես կարծում եմ գել է տեսել, դրանից է փախչում,—ասաց հայրս դժգոհ վեր կենալով ու հագնըվելով։—Յեթե գող ըլեր՝ կհաչեր։ Շունը միմիակ գել տեսնելիս չի հաչում։

—Դե որ եդպես է, թվանք վերցրու,—խորհուրդ տվեց մայրս անհանգստացած։—Սոված գելեր կըլնեն, կվնասեն...

Հայրս այդպես էլ արավ. հագնվելուց հետո՝ վերցրեց տան անկյունում կախված մեր հին թափանչան ու սկսեց վառոդ լցնել։

—Դու էլ վե՛ր կաց, Ստեփան,—ասաց մայրս։—Վե՛ր կաց, ճրագը վառի, հորդ հետ գնա։ Գելերը լուսից վախենում են...

Ասաց ու ինքն էլ վեր կացավ։

Յեվ մինչ հայրս հրացանը կլցներ—յես հագնվեցի արագ, գայլ տեսնելու ցանկությամբ տարված։ Շատ էի լսել գայլերի մասին, բայց չէի տեսել... Ճրագը գտա, վառեցի յեվ հորս հետ դուրս յեկա ուրախ։

Դուռը բաց արինք թե չէ—Զալանկը, կապի կտորը վզին, դիպավ հորս վոտքերին, կլանչեց ու առաջ վազեց։

Բայց հայրս կանգ առավ՝ շուրջը նայելու։ Յես նույնպես նայեցի, տեսնելու՝ գայլ չի՞ յերեվում արդյոք... Ցուրտ էր. ձյուն... գետինը, տանիքները, պատերը, ծառերը—ամեն ինչ—ծածկված էր ձյունով...

digitised by A.R.A.R.@

Թեյեվ լուսին չկար, բայց սպիտակի վրա ամեն ինչ յերեվում եր. սակայն գայլ չկար․ ․

«Յերեվի գոմի մոտ ե», մտածեցի ես։

Շունը, վոր առաջ եր գնացել, նկատելով հորս կանգ առնելը, յետ դարձավ իսկույն, կլանչեց ու կըրկին առաջ ընկավ. շուտ շուտ յետ, հորս յերեսին նայելով. կարծես ուզում եր հասկացնել, վոր հետեվենք իրեն։

Հայրս. հրացանը պատրաստ բռնած եվ չորս կողմն աչք ածելով, յես ել նրա հետ, քայլ առ քայլ գնացինք շան յետեվից։

Զալանկը վազում-գնում եր մինչեվ գոմի դուռը, այնտեղից վազում գալիս եր հորս մոտ, կլանչում յեվ դարձյալ գնում դեպի գոմը։

Այս բանը նա կրկնեց մի քանի անգամ, յեվ հայրս, այլեվս առանց շուրջը նայելու, շտապեց դեպի գոմը

—Եստեղ ինչ-վոր բան կա, ասաց նա ու քայլերն արագացրեց։

Յես, ճրագը ձեռիս, հետեվեցի նրան։

Զալանկը, գոմի դռան առջեվ կանգնելով, սկսեց կլանչել ու անհանգիստ շարժումներ անել։

Հայրս անմիջապես բացեց գոմի դուռը, յեվ յերբ մտանք ներս ու յես ճրագով լուսավորեցի գոմը —մեր աչքին պարզվեց հետեվյալ տեսարանը։

Մեր մեծ կովը ծնել եր հորթն աղբի մեջ ընկած՝ մզզում եր յեվ ուզում եր բարձրանալ։ Բայց չեր կարողանում Իսկ մայրը բառաչելով, անհանգիստ շուռ եր գ լիս յերկու կողմի վրա. կապը ձիգ եր տալիս՝ դունչը հորթին հասցնելու․․ Ու չեր կարողանում

Այդ տեսնելով—հայրս իսկույն վերցրեց հորթը, մաքրեց. աղ արավ ու դրեց մոր առաջ․․ Յեվ մինչ հայրս հորթը մաքրում, աղ եր անում—Զալանկը, ուրախ կլանչելով, թռչկոտում եր դես ու դեն, հետո, յերբ հայրս հորթը դրեց մոր առաջ, Զալանկը նստեց յեվ, դունչը թաթերին դրած, սկսեց բարի աչքերով նայել կովին ու հորթին, վորը դարձյալ, ժամանակ առ ժամանակ, մզզում եր թույլ ձայնով յեվ փորձում վեր կենալ, կանգնել թույլ վոտների վրա․․․ Այդ տեսնելով՝ Զալանկն ուրախությունից կլանչում եր յեվ կտրած պոչը շարժում։

—Այ կեցցե՛ս, կեցցե՛ս, Զալանկ,—ասում եր հայրս նրա գլուխը շոյելով։—Յես բեզ զուր տեղը ծեծեցի։

Պարզվեց, այսպիսով, վոր Զալանկը դրսից լսելով գոմում կատարվող անհանգստությունը—յեկել եր մեզ իմացնելու, բայց հայրս, ուրիշ բան կարծելով, բարկանում եր նրա վրա։



Մեր աչքերին պարզվեց հետեվյալ տեսարանը

Այդ օրվանից մենք սկսեցինք սիրել Զալանկին առանձին սիրով։ Յեվ յերբ պատահում եր, վոր նա հաչում, կլանչում եր դուրսը—միշտ ուշադիր եինք նրա ձայնին։ Գիտեինք, վոր Զալանկը սուտ չի հաչի։

—Շունն իմաստուն կենդանի յե,—ասում եր հայրս այդ դեպքից հետո։—Շանն ախպոր պես պետի սիրել ․

---

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

**ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԱՐԳԱՐՅԱՆ**

## ԼԱԳԵՐՈՒՄ

Ու օնած ե լագերն անույշ ու խնդուն,
Յերազներում նա հրճվում ե ու ժպտում։

Ահա, ահա հորիզոնն ե կարմրում,
Ու արեն ե փայլում դաշտում ու ձորում։

Պիոներներն վեր են ցատկում տեղերից,
Հագնվում են, դուրս են գալիս վրանից,

Ու վազում են մարզադաշտը մարզանքի.
Հոմն ե խաղում, հոմն ե պարում անհանգիստ։

Շաբաթներ են այսպես գալիս ու գնում,
Մենք ապրում ենք առողջ բնության վեհ
գրկում։

Յեվ ուշ աշնան խմբերով տուն ենք դառնում,
Սուլիչների ձայնը թողած անտառում։

digitised by A.R.A.R.@



Գ. Մահարի

# ԳԱՐՆԱՆԱՅԻՆ

Նա բացվում է հանդում,
քաղաքում, գյուղում.
ջա՜ն, ծաղիկներ բազմագույն.
շուրջը խնուղու,—
այդ հոտե՞րն են բառաչում,
արտո՞ւտը յերգեց,
թե՞ ջրերն են շառաչում
լեռներից ներքեվ...

Ամպերն յեկան սպիտակ
հոտերի նման,
մի սեվ ամպ էլ. վոնց վոր գամբռ,
գալիս է ահա.
սպասում են ծիլ ու ծառ
անձրեվի գալուն,—
ճերմակ հոտը բարկացավ,
վո՜նց է գոռգոռում...

Մի նաղարա՞ դըմփաց
յերկնքի քեճում...
Ես ի՞նչ քեճ է գոռ ու բաց,
ի՞նչ սիրտ չի հեվում.
ծիտերը սազ են քաշում,
ու հովը սրինգ,
ու ծաղիկները նախշուն
պարում են հիմի...

Անձրեվը՝ սուս՝ դադարեց,
արեվը յելավ,
յելավ... արեվ, ի՞նչ արեվ,
վոսկի՜ վոսկեփայլ...
քաղաքը գյուղին նայեց
ու գյուղը՝ նրան,
ու ծիածանը փայլեց
նրանց պես ուրախ...

Նա բացվում է հանդում,
քաղաքում, գյուղում.
ջա՜ն, ծաղիկներ բազմագույն
շուրջը խնուղու...—
այդ հոտե՞րն են բառաչում,
արտո՞ւտը յերգեց,
թե՞ ջրերն են շառաչում
լեռներից ներքեվ...։

**1928 թ. Յերեվան**

digitised by A.R.A.R.@

Խնկո Ապեր

# ՊԻՈՆԵՐ ՀՐԱՉԸ



Կրծքին ալ փողկապ.
Տղան կարմրալանջ.
Տղան պիոներ,
Անունով Հրաչ։
Հրաչը աշխուժ,
Փողկապով հպարտ,
Հրաչը նոր ուժ,
Ողակի մեջ զարդ.
Պիոներ նա մի,
Գործին միշտ պատրաստ,
Որինակելի,
Մաքրասեր, զգաստ։
Մարզանքում ճարպիկ,
Ջիլ վազքում շատ վարժ,
Խուզարկու, անվախ,
Ճկուն, դյուրաշարժ։
Պատահեց եսպես.
Մի խիստ շոգ ամառ
Պիոներները
Գնացին ճամբար։
Մի օր անտառից
Հրաչի դիմաց
Մի յեզ դուրս պրծավ
Սաստիկ կատաղած։
Մի յեզ ահարկու,
Պոզեր սրածայր,
Վոտների տակից
Թռչում են կայծեր։
Հովիվը գիլ-գիլ
Կանչումե հեռվից.
— Խրտնել ե յեզը
Դոշիդ կարմրից.
Շպրտիր գետին
Եդ գիզի-բիզին.
Կարմիր չի սիրում,







digitised by A.R.A.R.@



Ձոհ կերթաս յեզին։
Չի կորցնում իրեն
Վտանգի առաջ
Են հնարագետ
Պիոներն Հրաչ։
Թողնում ե կարմիր
Փողկապն իր վզին,
Պատվինշանն իր
Չի տալիս յեզին։
Վստահ լինելով
Իր վազքի չափին,
Իրեն հանձնելով
Եվ վազքի թափին,
Կտրում-անցնում ե
Մի ճամբա յերկար,
Վոտք տալով թռչում,
Բարձրանում մի ծառ։







digitised by A.R.A.R.@

Բայց բռնած ճյուղը,
Դալար ու ճկուն,
Հրաչի քաշից
Թեքվում է իսկույն։
Պա՛հը, դալար ճյուղը,
Լավ կարմրալանջին.
Գալիս է, յեկավ
Ողակն առաջին։
Մենակ չի տղան,
Տղան պիոներ,
Մի ամբողջ ջոկատ
Յեկան ընկերներ։
Բարձրացավ գոչյուն,
Մի սուլոց, մի ճիչ,
Փախավ են յեզը
Շղթայի միջից։
Հրաչը, է, ինչ,



Հեչ ել հերոս չի՞.
Հերոսը, կամ թե
Յեզից կփախչի՞։
Գործը Հրաչի
Ինչ կուզես՝ հաշվի,
Ողակի յերգում
Միշտ ել կհիշվի։
Ինչքան մեծ լինի
Թշնամու վտանգ՝
Պիտի չքանդվի
Փողկապ են ալ, թանգ,
Քաջ պիոների
Վզից ու լանջից.
Ողակը տեսավ
Այդ իր Հրաչից.
Իր լավ Հրաչից,
Ժիր, հնարագետ,

Վոր փրկեց իրեն
Յեվ պատիժն իր հետ։

Ս. Վահունի

# ՋԻՆ ՄԱՆՈՒԿԸ

Նա աչքեր ունի այնքան անկրակ,
դեմքը դեղին է Ջինմաչինի պես.
հազիվ ութ գարուն ուսերի վրա,
մի մանուկ է նա անժպիտ ու հեզ։
Խրճիթը նրանց փոքրիկ է անչափ
Շանհայի բանվոր թաղերից մեկում.
ամեն առավոտ, յերբ շչակը ճչա,
յելնում է շտապ ու գործի դիմում։
Նստում է գործի աչքերով անքուն,
նստում է նա միշտ խեղդող այն փոշում.
հազում է հաճախ, արյուն է թքում
և նուրբ ձեռքերով մաքրում սրբում։
Նրա հետ այնքան մանուկներ կային,
բոլորն էլ դեղին ու այնպես խոկուն...
գարուն է դրսում, վարդաբեր մայիս,
և նստում է նա մինչև իրիկուն։
Գործում է արագ- և անգամ ճաշին,
հիշում է անվերջ մորը սպասող.
հիշում է հաճախ իր հորը ռիկշի,
արյունը նրա -ճակատից հոսող։
Խաղում էր նա միշտ իր հոր ծնկներին,
հայրը նրան միշտ հեքյաթ էր ասում.
հայրը դժգոհ էր իրենց տերերից,
աչքերում ուներ զայրույթ ու ցասում։
Հիշում է ինչպես մի վառ առավոտ
հայրը հրացան առավ ու գնաց.
մթում տուն բերին նրան վիրավոր
և նա չշնչեց մինչև լուսաբաց։
Սուլում է կրկին շչակը մութում,
յելնում է տեղից հոգնած, անոթի.
տարտամ քայլերով, քայլերով իր թույլ
փողոցն է մտնում իրենց խրճիթի։
Միշտ տուն է բերում նա բրինձ մի քիչ —
ուտում է արագ բաժինը իրա.
մայրը շոյում է հոգնած մանուկին,
և ննջում է նա մոր թևի վրա։
Տեսնում է մինչ լույս դաշտերը իր դեմ,
տեսնում է գարուն, գետեր քչքչան.
ժպտում է նորից, քաղում է վարդեր,
մինչև վոր կրկին գուդոկներ ճչան։

digitised by A.R.A.R.@

# ԻՆՉ ՊԱՏՄԵՑԻՆՔ ՄԵՆՔ ԽՍՀՄ-Ի ՄԱՍԻՆ

**1928 թվին ԽՍՀՄ յեկած արտասահմանի պիոներական պատգամավորների հաշվետվությունը**

## ՅԵՍ ԶԵԿՈՒՑԵԼ ԵՄ 30 ԺՈՂՈՎ-ՆԵՐՈՒՄ

ԽՍՀՄ-ից վերադառնալուց հետո յես շատ աշխատեցի։ Յես դուրս եմ յեկել մանուկների, պատանի ընկերների միության (պիոներների), կոմսոմոլի ու կոմկուսակցության 30 ժողովներում։

**ՌՈՒՍԱՍՏԱՆ**
К борбье за рабочее дело будь готов! Всегда готов!

Յես խոսել եմ ԽՍՀՄ-ի մասին, գլխավորապես յերեխաների կյանքի, նրանց ուսուցման, պիոներական լագերների ու աշխատանքների մասին։ Բոլոր այդ միտինգները լինում եյին Մանչեստրի շրջանում, վորի շատ քաղաքներում մեր պատգամավորության հաշվետվությունների համաձայն կամպանիաներ են տարվում։

Դպրոցում նույնպես կազմակերպված եր ժողով, ուր յես պատմեցի իմ կատարած ճանապարհորդության մասին։ Մենք կազմակերպեցինք դպրոցական բջիջ և այժմ լույս ենք ընծայում դպրոցական «Կարմիր Արշալույս» թերթի առաջին համարը։ Յես թերթի խմբագիրն ու դպրոցական բջիջի ղեկավարն եմ։

Յերբ յես վերադարձա ԽՍՀՄ-ից, դպրոցում ինձ դիմավորեցին իմ ընկերներն ամբողջ խմբով. Նրանք նույնիսկ դուրս եյին յեկել փողոցի անկյունն ինձ դիմավորելու։ Մենք գնացինք դպրոց և նրանք բոլորն ինձ հարցնում եյին, թե ինչպե՞ս եմ յես անցկացրել իմ ժամանակը։ Վարիչը նույնպես ինձ հարցրեց այդ մասին և բարևեց ինձ ձեռքով, բայց ուրիշ վոչինչ չասաց ինձ։

**ԱՆԳԼԻԱ**
To fight for the morkers cause be ready! Rlmays ready!
ՏՈՒ ՖԱՅԹ ՖՈՐ ԴԸ ՈՒՈՐ-ԿԵՐՍ ԿՈԶ ԲԻ ՐԵԴԻ! ՕԼՎԵՅՍ ՐԵԴԻ!

## ՎԱՐԻՉՆ ԻՆՁ ՀԵՏ ՉԻ ԽՈՍՈՒՄ

Մեր Անգլիա վերադառնալուց հետո կազմակերպվեց մի շատ մեծ ցույց, բայց վոչ թե փողոցում, այլ փակ շենքում։ Յուրաքանչյուր պատ-

**ՉԵԽՈ-ՍԼՈՎԱԿԻԱ**
K boji za dêlnickou vêc bud pripraven! Ydjicki pripraven!
Կ ԲՈՁ ԶԱ ԴԵԼՆԻՉԿՈՒ ՎԵՑ ԲՈՒԴ ՊՐԻՊՐԱՎԵՆ! ՎԴԺԻՑԿԻ ՊՐԻՊՐԱՎԵՆ!

գամավոր դուրս եր գալիս այդ ցույցում և ընտրում իր համար մի նյութ զեկուցման համար։ Յես վերցրի ռուս յերեխաների առողջության մասին թեման։ Այդ ժողովը, ուր ներկա եյին միայն մեծերը, մեծ հաջողությամբ անցավ։

Դրանից հետո Լոնդոնի համարյա բոլոր մասերում կազմակերպվեցին միտինգներ։

Մենք կազմակերպում եյինք այդ միտինգները, վորովհետև զգում եյինք, վոր անհրաժեշտ է, վորպեսզի անկազմակերպ յերեխաները կարողանան իմանալ նաև յերեխաների կյանքի պայմանների մասին և համեմատեն այն իրենց պայմանների հետ։ Յես դուրս յեկա մոտ 26 միտինգներում։ Նրանք բոլորը տեղի եյին ունենում փակ շենքերում։

**ՇՎԵՑԻԱ**
Till kamp för arbetarklassens sak var redo!
ՏԻԼԼ ԿԱՄՊ ՖՈՐ ԱՐԲԵՏԱՐ-ԿԼԱՍՍԵՆՍ ՍԱԿ ՎԱՐ ՐԵԴՈ!

Այժմ այն մասին, թե ինչպես ընդունեցին ինձ դպրոցում. յերբ յես տասվոտյան դասարան մտա, աշակերտներից և ուսուցիչներից վոչ մեկն ինձ հետ չխոսեց դասերի մասին։ Դպրոցի վարիչն ինձ հետ մինչև այժմ էլ չի խոսում։ Դասարանում յես իմ ճանապարհորդության մասին զեկուցում չտվի, վորովհետև այդ թույլ չտրվեց, բայց յես խոսակցում եյի ա-

**ՖՐԱՆՍԻԱ**
Soyez prêts à lutter pour la cause ourière! Toujours prêts!
ՍՈՒԱՅԵ ՊՐԵ Ա ԼՅՈՒՏԵ ՊՈՒՐ ԼԱ ԿՈԶ ՈՒՎՐԻԵՐ! ՏՈՒԺՈՒՐ ՊՐԵ!

շակերտների հետ անհատապես։

Մենք, պատգամավորության անդամներս, նամակներ ենք գրում իրար։ Յես նամակներ եմ ստացել համարյա բոլորից։

**Վ. Ա. Բեկեր**

Լոնդոն

**ՖՐԱՆՍԻԱ**
Yive la fédération des enfants oüvriers et paysants!
ՎԻՎ ԼԱ ՖԵԴԵՐԱՍԻՈՆ ԴԵ ԶԱՆՖԱՆ ՈՒՎՐԻԵՐ ԴԵ ՊԵՅԶԱՆ!
ԿԵՑՑԵ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՅԵՎ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ՅԵՐԵԽԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ!

## ԻՆՉՊԵՍ ԻՆՁ ԴԻՄԱՎՈՐԵՑԻՆ

Յերբ յես ԽՍՀՄ-ից Մոնտրեյլ յեկա, իմ ընկերները, կուսակցությունը, պրոֆմիությունները ու կոմսոմոլը կազմակերպեցին մեծ ու շքեղ դիմավորում։ Իմ ծնողները զարդարել եյին մեր տունը, իսկ իմ քույրը մի գեղեցիկ, շնորհակալական ճառ ասաց ինձ դիմավորող ժողովրդին։

Մենք շարժվեցինք ժողովի սրահը և այնտեղ լեփ-լեցուն դահլիճի առաջ

**ՆՈՐՎԵԳԻԱ**
Yaer beredt! Alltid beredt!
ՎԱԵՐ ԲԵՐԵԴՏ! ԱԼԼՏԻԴ ԲԵ-ՐԵԴՏ!
ՅԵՂԻՐ ՊԱՏՐԱՍՏ! ՄԻՇՏ ՊԱՏ-ՐԱՍՏ!

յես պատմեցի այն մասին, ինչ տեսել եյի Խորհրդային Ռուսաստանում։ Հըն-նարավորություն չունեմ ձեզ նկարա

digitised by A.R.A.R.@

գրել հավաքվածների վոգեվորությունը։ Ինձ բազմաթիվ հարցեր տվեցին, յես պատասխանեցի բոլորին հաջողությամբ։ Հետո կուսակցական բոլոր ընկերները շնորհավորում եյին ինձ։

Այդ մեր լեռնային գյուղումն եր։

Հետո հանդես յեկա Փարիզում, Գալենում, Լիլում և ուրիշ քաղաքներում։

Ամեն տեղ, ուր յես հանդես եյի գալիս, բանվորները շատ լավ եյին վերաբերվում ԽՍՀՄ-ի մասին տրված իմ զեկուցմանը։

Դպրոցում ուսուցիչները սպասում եյին ինձ։ Իմ ԽՍՀՄ գտնված ժամանակ ուսուցիչներն ու ուսուցչուհիները հարցրել եյին իմ յեղբայրներին ու քույրերին, թե յերբ պիտի յես վերադառնամ, վորովհետև նրանք ցանկանում եյին իմանալ՝ ինչ եմ յես տեսել ԽՍՀՄ-ում։ Ինչպես դուք տեսնում եք, հետաքրքրությունը դեպի ինձ մեծ եր, անպես վոր յես նրանց «սիրելին»

**ԳԵՐՄԱՆԻԱ**

Es lebe der Jung Spartakus Bund!

ԵՍ ԼԵԲԵ ԴԵՐ ՅՈՒՆԳ ՍՊԱՐՏԱԿՈՒՍ ԲՈՒՆԴ!

ԿԵՑՑԵ ՊԱՏԱՆԻ ՍՊԱՐՏԱԿՅԱՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ

եյի։ Նրանց շատ եյին դուր գալիս իմ պատմությունները և հետաքրքրությամբ ինձ լսում եյին։

Ուսուցիչներն ասացին միայն, վոր շատ լավ է այդպիսի գեղեցիկ ճանապարհորդություն կատարելը և վոր նրանք էլ շատ կցանկանային այդ։ Դրան յես նրանց պատասխանեցի, վոր չարժե ԽՍՀՄ գնալ միայն զվարճանալու նպատակով, ավելի լավ է՝ նրանք անցկացնեն իրենց արձակուրդն այստեղ։ Նրանք ժպտացին և մեր խոսակցությունը սրանով էլ վերջացավ։

Ինչ վերաբերում է դպրոցական իմ ընկերներին, նրանք խոստացան անդամագրվել պիոներական խմբակում, վորը յես կուսակցական ընկերների օգնությամբ կազմակերպեցի վերադառնալուց հետո։ Դասարանում յես հատուկ զեկուցում չկարողացա տալ իմ ճանապարհորդության մասին, բայց յես արի այդ դասամիջոցներին, բակում հավաքված բոլոր աշակերտների համար։

**Դյուրան Մորիս.**

**ՄԵԿՍԻԿԱ**

Yiva los Pioneras де Rajos Mexico!

ՎԻՎԱ ԼՈՍ ՊԻՈՆԵՐԱՍ ՌՈԺՈՍ ԴԵ ՄԵԿՍԻԿՈ!

ԿԵՑՑԵՆ ՄԵԿՍԻԿԱՅԻ ԿԱՐՄԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ!

## ԽՍՀՄ ՅԵԿԱԾ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԴԱՄ՝ ԴՅՈՒՐԱՆԻ ՔՐՈՋ ՃԱՌԸ

ԸՆԿԵՐՆԵՐ!

Իմ չափազանց ծեր և այժմ չափազանց հուզված ծնողների անունից յես ուզում եմ շնորհակալություն հայտնել այն գեղեցիկ ընդունելության համար, վոր ցույց տվիք ԽՍՀՄ-ից վերադարձած իմ յեղբորը։

Մի պատանի պիոների պատվին կազմակերպած այս ցույցը ամեն ճառից ավելի լավ է ցույց տալիս, թե ինչպես բանվորները սիրում են Ռուսական հեղափոխությունը։

**ԱՐԳԵՆՏԻՆԱ**

Yiva los Agrupaciones Infantiles Co munistas!

ՎԻՎԱ ԼՈՍ ԱԳՐՈՒՊԱՑԻՈՆԵՍ ԻՆՖԱՆՏԻԼԵՍ ԿՈՄՈՒՆԻՍՏԱՍ!

ԿԵՑՑԵՆ ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԽՄԲԱԿՆԵՐԸ!

Յես պետք է ձեզ ասեմ, վոր իմ ծնողներն յերջանիկ են, տեսնելով իրենց վորդուն, իմ յեղբորն այդպիսի յերկարատև ճանապարհորդությունից վերադարձած։ Բայց նրա Ռուսաստան գտնված ժամանակ, նրանք չեյին վրշտանում։ Առանց նրան տանը դատարկ եր, բայց մենք համարյա չեյինք նկատում այդ դատարկությունը, վորովհետև ամբողջ ժամանակ խոսում եյինք նրա մասին, նրա գեղեցիկ ճանապարհորդության մասին դեպի առաջին պրոլետարական հանրապետությունը, և մենք նախանձում եյինք նրան, ուշք չդարձնելով այն բոլոր նախազգուշացումներին, վորոնք հավատում եյին Խորհրդային Միության մասին տարածված ստերին։ Իմ ծնողները, յեղբայրներն ու քույրերը և մենք բոլորս ծիծաղում եյինք նրանց ասածների վրա, վորոնք հավատում եյին բուրժուական թերթերին։

**ՉԻՆԱՍՏԱՆ**

ՉԺՈՒՆ-ԳՈ ԼԱՈ-ԴՅԻՆ ՏՈՒՆ-ՑՋՅԻ-ՑՋՅՈՒՆ ՎԱՆ-ՍՈՒՅ!

ԿԵՑՑԵՆ ՉԻՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ!

Այսօր ճանապարհորդությունից վերադարձած իմ յեղբայրը կ՚պատմի մեզ այն մասին, թե ինչպես են աշխատում ԽՍՀՄ-ում։ Նա մեր ռուս ընկերների կյանքի մասին ճշմարտությունը կը պատմի, մի ժողովրդի մասին, վորին մենք համարում ենք բոլորից հերոսական և բոլորից մեծ ժողովուրդ, վորովհետև նա համարձակվեց դեն շպրտել իրեն ճնշող կապիտալիզմը և նրա դիակի վրա բարձրացնել բանվորների կարմիր դրոշակը, վորովհետև նա համարձակվեց կապիտալիստական յերկրների շրջապատում հիմնել աշխատավորների հանրապետություն։

Իմ յեղբայրը կերթա ամեն տեղ, ուր նրան ցույց կտան կուսակցությունն ու կոմյերիտմիությունը։ Իմ ծնողները յերբեք դեմ չեն լինի այն բանին, վոր նա գնա և ամեն տեղ պատմի ճշմարտությունը պրոլետարական Ռուսաստանի մասին։

Կարևոր չէ այն, վոր իմ յեղբայրը հռետոր չէ։ Միևնույն է, նրա խոսքերը զարդարված կլինեն ջերմությամբ, նա կպատմի այն, ինչ տեսել է, և բանվորները նրան ավելի լավ կհասկանան, քան հռետորին։

# ԿԵՑՑԵ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՅԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԿԱՊԸ

digitised by A.R.A.R.@

# ԿՈԼՎԱՐԻ ՋՐՈՒՅՑՆԵՐԸ

## ՈՎ Է ՈՂԱԿԱՎԱՐԸ ՅԵՎ ԻՆՉ ԵՆ ՆՐԱ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Ողակավարն ընտրվում է յուրաքանչյուր 3 ամիսը մեկ անգամ՝ ողակի բոլոր պիոներների կողմից։*

*Ողակավարից շատ բան է կախված։ Յեթե ողակավարը լավ աշխատող է, այդ դեպքում ողակն էլ լավ կաշխատի, ողակավարը վատն է—ողակն էլ բանի պետք չի, քնած է։ Ահա թե ինչու ողակավարների վերընտրությունն այդքան հուզում է պիոներներին։*

*Ողակավարն ամենից առաջ պարտաճանաչ և ճշտապահ է իր աշխատանքի մեջ։ Նա միշտ մաքուր է հագնված։ Այդ ինարկե հասկանալի յե. չէ՞ որ չի կարելի ուրիշներին որևէ մի բան սովորեցնել, յեթե ինքդ այդ չես իմանում, կամ չես գործադրում, կատարում։*

*Ողակավարը յեռանդուն աշխատող է, յերբեք չի թողնի կիսատ ողակի սկսած աշխատանքը։ Չի հուսահատվում նույնիսկ ամենածանր պայմաններում։*

*Նախաձեռնությունը — այսինքն նոր գործ սկսելու և այն ամբողջովին կյանքում անցկացնելու կարողությունը—նրա հիմնական հատկությունն է։*

*Նա լավ կազմակերպիչ է։ Հույս չի դնում միայն իր ուժերի վրա, այլ աշխատանքի մեջ է գրավում ամբողջ կոլեկտիվը։ Նա ընկեր է և ոչ թե հրամանատար։ Միշտ ուրախ և կենսուրախ նա հանդիսանում է կոլեկտիվի հոգին։*

*Նա ուշադիր է վերաբերվում դեպի ողակի աշխատանքը։ Ջանասիրությամբ պատրաստվում է ողակային հավաքույթներին, աշխատելով նրանք ավելի գրավիչ, ավելի հետաքրքիր դարձնել։*

*Նրան առաջ է քաշել ամբողջ կոլեկտիվը, որի առաջ պատասխանատու յե նա իր տարած աշխատանքի համար։*

*Ահա ձեզ լավ ողակավարի նկարագիրը, նմա՞ն է արդյոք նա ձեզ։*

*Ապա նայեցեք, տեսեք։*

## ԻՆՉ ԱՇԽԱՏԱՆՔ Է ՏԱՆՈՒՄ ՈՂԱԿԱՎԱՐԻ ՈԳՆԱԿԱՆԸ

*Ողակավարի ոգնականը նույն հատկությունները պիտի ունենա, ինչ որ ունի ողակավարը։ Այդ հասկանալի յե։ Ողակավարն իր ոգնականով ծրագրում է ամբողջ աշխատանքը և անցկացնում այն։ Յեթե ողակավարը բացակայում է՝ ոգնականը փոխարինում է նրան։*

*Ողակավարը և ոգնականը միասին են աշխատում։ Այդպես պետք է լինի. սակայն այդպես չէ շատ դեպքերում։ Սովորաբար ողակավարն ամբողջապես աշխատանքները վերցնում է իր վրա, ոգնականին աննշան գործեր է տալիս կատարելու, իսկ հետո ըսկըսում է գանգատվել ծանրաբեռնվածությունից։*

*Ողակավարը պետք է միշտ հիշի, որ իր ոգնականը վաղ թե ուշ փոխարինելու յե իրեն, և պիտի կառուցի ամբողջ աշխատանքն այնպես, որպեսզի ոգնականը սովորի ողակը լավ ղեկավարել։*

*Լավ կլինի, յեթե ողակավարների ոգնականներին ավելի հաճախ վերընտրեք։ Թող նրանք փոխվեն նույնիսկ յուրաքանչյուր 3-4 հավաքույթից հետո։ Դրա ոգուտն այն կլինի, որ պիոներներից շատերը կըսովորեն կազմակերպել ողակային աշխատանքը։ Ողակավարի և ոգնականի համերաշխ աշխատանքը լավ արդյունքներ կտա։ Մշակեցեք հավաքույթի ծրագիրը, դասավորեցեք առաջուց, թե ով ինչ պիտի անի և ինչի համար է պատասխանատու, և ձեզ մոտ, յերբեք, աշխատանքի մեջ թերություններ չեն լինի, դժվարությունների չեք հանդիպի։*



digitised by A.R.A.R.@

# ԷՔՍԿՈՒՐՍԻԱՆԵՐԸ ՅԵՎ ԶԲՈՍԱՆՔՆԵՐԸ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԼԵԿՏԻՎՈՒՄ

## (ԶՐՈՒՅՑ ՈՂԱԿԱՎԱՐՆԵՐԻ ՀԵՏ)

Մեր կոլլեկտիվները հաճախ կազմակերպում են էքսկուրսիաներ և զբոսանքներ, սակայն, դրանք շատ դեպքերում կրում են պատահաբար կազմակերպված, վոչ ծրագրված բնույթ։



Զբոսանք կամ էքսկուրսիա կազմակերպելիս, պետք է տանել համապատասխան նախապատրաստական աշխատանք։ Հարկավոր է վորոշել էքսկուրսիայի կամ զբոսանքի վայրը, կազմել ծրագիր և ողակներին տալ համապատասխան առաջադրություն։ Այնպես վոր պիոներները նախորոք պետք է իմանան, թե ինչ են անելու իրենք, ուր են գնալու և այլն։

Էքսկուրսիա կարելի է կազմակերպել վորոշ նպատակներով.— օրինակ, գիտական վորևէ ուսումնասիրության նպատակով, կամ լոկ հանգստի և ժամանցի համար։

Մեր պիոներական էքսկուրսիաները պետք է հետապնդեն մի շարք նպատակներ։

Էքսկուրսիան վոչ միայն պետք է կազմակերպի պիոներների հանգիստն ու ժամանցը, այլև նա պետք է տա պիոներներին վորոշ գիտելիքներ և ունակություններ՝ կապված տվյալ վայրին կամ շրջանին ծանոթանալու հետ, վորոշ գործնական աշխատանք կատարելու հետ։

Էքսկուրսիայի վայրը չպետք է շատ հեռու լինի։ Տեղը վորոշելիս, պետք է նկատի ունենալ այն, վոր 10—13 տարեկան հասակ ունեցողներին կարելի յե տանել 6—7 կիլոմետր, 13-16 տարեկաններին՝ 10 կիլոմետր—հաշվելով և վերադարձը։ Ճանապարհին պետք է քայլել վոչ շատ արագ, վոչ էլ դանդաղ։ Անհրաժեշտ է, վոր պիոներները մի րոպեյում անցնեն 110—120 քայլ. այս դեպքում մի ժամում հնարավոր կլինի անցնել 4 կիլոմետր տարածություն։ Բացի այդ՝ հարկավոր է 40—45 րոպե քայլելուց հետո 10—15 րոպե



Այսպես պետք է հանգստանալ յերկար ճանապարհ գնալուց հետո

հանգստանալ։ Հանգստանալու ժամանակ հարկավոր է պառկել և վոտները դնել քարի կամ մի այլ բանի վրա, վորպեսզի վոտները մարմնից և գլխից բարձր լինեն։

Պարտադիր չէ, վոր ճանապարհին պիոներները շարքով, կամ մի վոտի գնան, լավ կլինի գնալ ազատ քայլերով, սակայն չխառնելով իրենց ողակները։

Էքսկուրսիա գնալիս պետք է աշխատել, վոր պիոներները քիչ բեռ վերցնեն հետները (3-4 կիլո)։ Այս հանգամանքը յերբեք չի կարելի մոռացության տալ, քանի վոր պիոներները շատ բեռ ունենալու դեպքում կարող են հեշտությամբ հոգնել. իսկ հոգնածությունը փչացնում է պիոներների տրամադրությունն ու վոգևորությունը, վորոնցից շատ բան է կախված էքսկուրսիան լավ անցկացնելու գործում։

Էքսկուրսիաների ժամանակ անհրաժեշտ է որվա ռեժիմ սահմանել և խստությամբ այն գործադրել։ Միաժամանակ չպետք է մոռանալ և այն, վոր պիոներական էքսկուրսիայում հարկավոր է շատ տեղ հատկացնել զվարճալիքների, խաղերի կազմակերպմանը, քան աշխատանքին։

Ահա ձեզ միօրյա էքսկուրսիայի մոտավոր ռեժիմը։ Առավոտյան ժ. 8-12 ը ճանապարհում և ճանապարհին հանգստանալը։ Ժամը 12-3-ը հանգիստ և ճաշ։ Ժամը 3-6 աշխատանք և զվարճություններ, ժամը 6-ին թեթև ընթրիք, ապա վերադարձ։

Նկատված փաստ է, վոր էքսկուրսիայից, զբոսանքից վերադառնալիս պիոներներն իրենց զգում են հոգնած, թուլացած։ Վորպեսզի վերադարձին պիոներները աշխույժ և ուրախ լինեն, հարկավոր է վերադարձին ուրախ, աշխույժի բերող յերգեր յերգել։ Զբոսանքի և էքսկուրսիայի դուրս գալիս՝ պետք է անպայման վերցնել թմբուկ և փող։

Զբոսանքների ժամանակ անհրաժեշտ է պիոներներին գործնականորեն ծանոթացնել դրոշակախոսության, «մորզեյի», տեղագրության հետ, անցկացնել ռազմական խաղեր և այլն։

Լ. ՄԻՐԶՈՅԱՆ

digitised by A.R.A.R.@

# ԻՆՁ ԵՆ ԳՐՈՒՄ ՄԵՐ ԹՂԹԱԿԻՑՆԵՐԸ



Կոլվարի զրույցը դաշտում

## ՇԵՐԱՄԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎՈՒՄ

**Ուսուցչի հետ ձեռք-ձեռքի տված, նրա ընկերական խորհուրդներով առաջնորդվելով, Մոլլա-Բայազետի պիոներները գործնական գիտելիքներ են ձեռք բերում**

*Արմավիրի շրջանի Մոլլա-Բայազետ գյուղի պիոներները, դպրոցի վարիչի ղեկավարությամբ, զբաղվում են շերամապահությամբ։*

*Պիոներները մեծ հետաքրքրությամբ խնամում են շերամի նորածին թրթուռներին։*

*Կոլեկտիվի խորհրդի վորոշման համաձայն, ողակները հերթով թրթուռներին կերակրելու համար տերևներ են բերում։ Սպասվում է 100 ռուբլուց ավելի արդյունք։ Սակայն մեզ հետաքրքրողը արդյունքը չէ, այլ այն, վոր պիոներները կոլեկտիվ կերպով գործնական աշխատանք են կատարում, զբաղվում են շերամապահությամբ։*

*Այդ աշխատանքների հետ զուգընթաց, վարիչը պիոներական կոլեկտիվի հավաքույթներում անցկացնում է զրույցներ շերամի մշակման յեղանակների և ընդհանրապես շերամապահության նշանակության մասին։*

*Պիոներներին մեծ ուրախություն է պատճառել իրենց նախաձեռնած աշխատանքը։ Նրանցից մեկը, մոտենալով իր ծնողին, բարձր տրամադրությամբ ասել է.— Մամա ջան, մենք էլ ենք շերամ պահում։*

**Հ. Հովհաննիսյան**

## ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՆ ՁԵՌՔ ԲԵՐՈՒՄ

*Տեքստիլ գործարանի Ղարաքիլիսայի բաժանմունքին կից կա պիոներական կոլեկտիվ։ Կոլեկտիվում կան մի քանի պիոներներ, վորոնք մյուսներից ավելի յեն աչքի ընկնում իրենց վարք ու բարքով, իրենց աշխատասիրությամբ։ Նրանցից մեկն է Ոգսեն Մելքոնյանը։ Նա միաժամանակ աշխատում է գործարանում, վորպես անչափահաս բանվոր։ Վարպետ Ջուլհակի ղեկավարությամբ նա բավական հաջող կերպով սովորել է իր արհեստը։*

*Գործարանն ունի իր կուլտանկյունը։ Հենց վոր Ոգսենը գնում է այնտեղ, նա կարգավորում է գրքերը, թերթերը, մաքրում է անկյան փոշին և այլն։*

*Թող մյուս պիոներները որինակ վերցնեն ընկերոջից։*

**Հ. Վարդանյան**

## ՊԱՏԻ ԹԵՐԹԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ

*Մայիսի 26 ին Ղարաքիլիսայի բանակումբում բացվեց պիոներական պատի թերթերի ցուցահանդես։ Այդ ցուցահանդեսը մեծ հետաքրքրություն առաջացրեց ամբողջ պատանեկության մեջ։*

*Ցուցահանդեսը պարզեց, վոր մեր պատի լրագրերն ունեն աչքի ընկնող թերություններ։ Որինակ, պատանիներին հետաքրքրող զվարճալիքի բաժինը բացակայում է բոլոր պատի թերթերում։*

*Հետո թերթում շատ քիչ է լուսաբանվում պիոներական կոլեկտիվի ներքին կյանքը։ Յեթե մեկը կարդա այդ թերթերը՝ կոլեկտիվի կյանքն իմանալու ցանկությամբ, նա շատ քիչ բան կարող է իմանալ։ Այն ինչ՝ պիոներական կոլեկտիվի պատի լրագիրը պետք է լինի նրա աշխատանքների հայելին։*

*Հետո պատի թերթերում շատ տառասխալներ կան։*

*Այս թերությունները վերացնելու համար պետք է աշխատեն պիոներական կոլեկտիվները։*

**Ա. Դաղբաշյան**

## ՈՐԻՆԱԿԵԼԻ ԱՇԽԱՏԱՆՔ

*Իջևանի շրջանի Ն. Աղդան գյուղի պիոներական կոլեկտիվը մի որինակելի աշխատանք է ձեռնարկել։ Նա վերցրել է մի այգի և կաղամբի շիթիլ է անկել։ Կոլեկտիվը բոլոր աշխատանքները կատարել է ողակների միջոցով և տեղի գյուղատնտեսի ցուցմունքով և հրահանգներով։ Ամբողջ գյուղի մեջ այդպես լավ կերպով կաղամբ յերբեք չի մշակվել։*

*Թող մյուս պիոներական կոլեկտիվները որինակ վերցնեն Ն. Աղդանի պիոներական կոլեկտիվից։*

**Ն. Թուխիկյան**

digitised by A.R.A.R.@



Մ. ԳՈՐԿԻՆ ՅԵՐԻՏԱՍԱՐԴ ԺԱՄԱՆԱԿ

# ՄԱՔՍԻՄ ԳՈՐԿԻՆ ՅԵՎ ՓՈՔՐԻԿ ՄԱՆԿԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԸ

*1907—10 թվերին Բագվում կար մի փոքրիկ դպրոց, ուր սովորում եյին տարբեր ազգությունների պատկանող յերեխաներ—հայեր, ռուսներ, վրացիներ, թուրքեր, լեհեր և այլն։ Դպրոցում բոլորն էլ խոսում եյին ռուսերեն, իսկ տանը՝ իրենց մայրենի լեզուներով։ Մայիսմեկյան տոնին նրանք դուրս եյին գալիս տարբեր գույների հին հագուստներով, յերգում եյին աշխատանքի ու պայքարի յերգեր և հպարտանում իրենց ինտերնացիոնալով։*

*Ահա այս փոքրիկ, մանկական ինտերնացիոնալի հետ է բարեկամանում Մաքսիմ Գորկին հազարավոր կիլոմետրեր հեռավորությունից — Իտալիայից։*

*Այդ բարեկամության առիթ է ծառայում Մեսսինային պատահած մի դժբախտ պատահար։ 1909 թ. սկիզբներին յերկրաշարժը խոշոր վնասներ է հասցնում Մեսսինային։ Բազմաթիվ տներ փլչում են, իրենց փլատակների տակ թողնելով շատ բնակիչների, և ազգաբնակության մեծ մասը մնում է անապաստան։*

*Հենց այդ ժամանակ Բագվի մանկական ինտերնացիոնալը կազմակերպած է լինում մի ներկայացում, վորպեսզի ստացված արդյունքով գունավոր մատիտներ և ուրիշ դպրոցական իրեր գնի ավելի չքավոր ընկերների համար. բայց յերբ լսում են Մեսսինային պատահած դժբախտության մասին, վորոշում են դրամն ուղարկել անապաստան մնացած մանուկներին։*

*Նրանք ուղարկում են դրամը Մաքսիմ Գորկուն, վորն ապրում եր Մեսսինայի մոտ և իր ուժերը ներածին չափ ոգնում եր նրա դժբախտ բնակիչներին։ Դրամի հետ ուղարկում են նաև իրենց լուսանկարն ու մի նամակ։ Գորկին նրանց նամակին պատասխանում է և այդպիսով սկսվում է նրանց մեջ մի բարեկամություն, վորն այնուհետև յերկար շարունակվում է։ Ահա Գորկու առաջին նամակն ուղղված այդ մանուկներին.—*

### *ԹԱՆԿԱԳԻՆ ՅԵՐԵԽԱՆԵՐ!*

*Յես ստացա Մեսսինացիների համար հավաքած ձեր փողը՝ սրտանց շնորհակալ եմ ձեզանից բոլոր նրանց փոխարեն, վորոնց դուք ոգնեցիք։ Հոգուս խորքից ցանկանում եմ ձեզ. լավ յեվ փոքրիկ մարդիկ, վոր ձեր ամբողջ կյանքում լինեք այդպես աչքաբաց յեվ արձագանքեք ուրիշի վշտին այնպես, ինչպես արիք այս դեպքում։* **Ամենալավ զվարճությունը, կյանքի ամենաբարձր ուրախությունը՝ իրեն մարդկանց մոտ ու պետքական զգալն է։ Այդ ճշմարտություն է. մի մոռացեք այդ յեվ նա կտա ձեզ անչափ բաղդավորություն։** *Դուք 12 հոգի յեք։ Իտալիան, այս գեղեցիկ յերկիրը հիշելու համար, վորը ցանկանում եմ ձեզ յերբեվե տեսնել, ուղարկում եմ մի դյուժին նկար։* **Առողջ յեղեք, սիրեցեք միմիանց յեվ ավելի շատ չարաճճիություն արեք. յերբ կմեծանաք՝ ուրախ ծիծաղով կհիշեք ձեր չարաճճիությունների մասին։**

**Ամուր սեղմում եմ ձեր թաթիկները. թող լինեն նրանք ազնիվ յեվ ուժեղ ձեր կյանքի բոլոր ուղերում...**

**Մ. ԳՈՐԿԻ**

*Հ. Գ. Կարո՞ղ եմ ձեր լուսանկարները տպել իտալական թերթերում, հաղորդեցեք ինձ այդ մասին։*

**Ա. Պ.**

*Այս նամակն անհուն բերկրություն է պատճառում մանուկներին։ Նրանք անմիջապես պատասխանում են նամակին։ Ամառային արձակուրդների ժամանակ ստանում են բազմաթիվ նվերների հետ Գորկու յերկրորդ նամակը, ուր նա գրում է—*

digitised by A.R.A.R.@

«Վողջույն Ջեֆրին, Լիզային, Վիտային, Դիմային, Լենային, Մերիին, Մեմեյին, Շուրային, Իրենային, Պավլին, Նորային, Ֆեդիային, Բորային, Գյունտերին։

Շնորհավորում եմ ձեր լավ տոնը, ցանկանում եմ ձեզ թուլանալու աստիճան ուրախանալ։

Յես ցանկանում եմ, վոր դուք ինձ հիշեք. յեվ ահա մտածեցի ուղարկել աղջիկներին շրջանակներ, իսկ տղաներին՝ փայտյա տուփեր — այստեղի գյուղացիների աշխատանքը։

Յեթե այդ իրերը ձեզ դուր գան, յես ուրախ կլինեմ, իսկ յեթե դուք նորից գրեք մի փոքրիկ նամակ, այդ արդեն ինձ համար տոն կլինի։

Շրջանակների յեվ տուփերի վրա յես մակագրել եմ, թե վորն ումն ե, բայց հավանորեն վատ եմ արել յեվ դուք ուշադրություն մի դարձրեք այդ մակագրությունների վրա — լա՞վ։

Վախենում եմ նույնպես, վոր յես շփոթած լինեմ. շատ դժվար ե լուսանկարի միջոցով ջոկել, թե ձեզանից վորո՞նք են տղաները յեվ վորոնք աղջիկները. դուք բոլորդ ել կուրնոս եք։

Յես ուզում եմ ուղարկել այստեղի խեցեմորթներից ձեր թանգարանի համար, վորի մասին գրել եր ինձ Վիտյան, յեվ յես հավանորեն կանեմ այդ վորոշ ժամանակից հետո։

Ձեր նամակն ստանալով յես ուրախությունից ծիծաղեցի այնպես, վոր բոլոր ձկները դուրս հանեցին քթերը ջրից — ինչո՞ւմն ե բանը։ Յես պարզեցի նրանց, վոր մյուս ծովի ափին ապրում են շատ լավ մարդիկ. նրանք դեռ փոքր են, բայց յես հավատացած եմ, վոր յերբ մեծանան, ելի նրանք լավը կլինեն, ահա թե ինչու յեմ յես ուրախ։

Վորպեսզի դուք չասեք, վոր յես վատ եմ գրում յեվ իմ ձեռագիրը չի կարելի կարդալ, ահա յես տպել եմ մեքենայի վրա այս նամակը։

Դուք ինքներդ լավ եք գրում։ Սպասեցեք, յես կպահեմ ձեր նամակները յեվ մի 20 տարուց հետո ցույց կտամ ձեզ նրանք։

Ինչպիսի մեծ ուրախությամբ կտեսնվեյի ձեզ հետ, ինչպես լավ կխաղայինք մենք յեվ ինչքան զվարճալի բաներ կարող եյի պատմել ձեզ։ Յես այնքան ել շատ յերիտասարդ չեմ, բայց տխուր մարդ ել չեմ յեվ կարող եմ շատ լավ կերպով ցույց տալ, թե ինչ ե լինում ինքնայեռին, վորի մեջ կրակ են լցրել յեվ մոռացել են ջուր լցնել։ Կարող եմ նույնպես ցույց տալ՝ ինչպես ծույլ, հիմար «պերկիյա» ձուկը վերցնում ե կարթից կերակուրը, յեվ ուրիշ շատ ծիծաղելի բաներ։ Յես շատ յեմ սիրում խաղալ յերեխաների հետ։ Այդ իմ հին սովորությունն ե. 10 տարեկան հասակումս յես իմ փոքրիկ յեղբոր դայակն եյի — նա՛ մեռավ, այնուհետեվ իմ մյուս 2 յեղբայրների դայակը դարձա, յեվ վերջը, յերբ 20 տարեկան եյի, տներին հավաքում եյի բոլոր փողոցներից յերեխաներին յեվ նրանց հետ գնում եյի անտառ ամբողջ օրով, առավոտից մինչեվ յերեկո։



Գորկին իր բարեկամների հետ վերադառնում ե զբոսանքից

Այդ շատ լավ եր, գիտեք, հավաքվում եյին մոտ 60 յերեխաներ, նրանք փոքրիկ եյին, 4 տարեկանից սկսած յեվ 10 տարեկանից վոչ մեծ։ Վազվզելով անտառում՝ նրանք հաճախ չեյին կարողանում վոտքով տուն գնալ։

Բայց դրա համար ինձ մոտ լինում եր հատուկ բազկաթոռ։ յես կապում եյի այն իմ մեջքին, այդ բազկաթոռի յեվ ուսերիս վրա նստեցնում եյի հոգնածներին յեվ այդպիսով հասցնում եյի նրանց դաշտով տուն։ Հրաշալի եր։

Լավ ժամանակ եր ինձ հաճելի յե հիշել նրա մասին։

Իսկ հետո յես դարձա գրող — այդ շատ դժվար գործ ե, թեպետ սիրում եմ այն։

Դժվար ե այդ ամենից ավելի նրա համար, վոր այն հասուն մարդիկ, վորոնք կարդում են գրքերը, կարող ե պատահել մոռանում են, վոր գրողը նույնպես մարդ ե յեվ նայում են նրան այնպես, կարծես թե նա չորքոտանի ձուկ ե կամ թեվավոր այծ։

Իրենան խնդրել եր, վոր յես յերեխաների համար պիեսա գրեմ. յես փորձեցի, յեվ դուրս յեկավ վոր չեմ կարողանում։

Շարունակո՞ւմ եք հրատարակել ձեր ժուռնալը։

Յեթե բացի առաջին համարներից նոր համարներ կան, խնդրում եմ վոր ինձ ուղարկեք։

Յես կջանամ ձեզ համար հեքյաթ գրել — լա՞վ։

Առողջ յեղեք յեվ հաճախ մի վեճեք։ Այդ վեճերը, յես ձեզ ասում եմ, սարսափելի կերպով խանգարում են ուրախ ապրելուն։

Մ. ԳՈՐԿԻ

Գորկու այդ փոքրիկ բարեկամներն այժմ արդեն մեծացել են և իրականացրել նրա հույսերը։ Նրանք այժմ ել լավ մարդիկ են։ Վոմանք կոմմունիստներ են, վոմանք կոմյերիտական, վոմանք ել ուսուցչությամբ են զբաղվում։ Բոլորն ել աշխատում են զանազան ասպարեզներում։ Իսկ նրանցից 3-ը 1919 թ. զոհվեցին քաղաքացիական կռիվներում, լենինյան գործի հաղթանակի համար։



digitised by A.R.A.R.@

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎՆԵՐԸ ԳՅՈՒՂՈՒՄ ՊԵՏՔ Է ԱՅԾ ՊԱՀԵԼ ԻՄԱՆԱՆ



Յեզիդ պիոներ Մաչիս Դերվիշյանը՝ իր խնամած անգորական այծի հետ, վորը անցյալ տարի Բեւբի Տոնենի մրցանակի յե արժանացել։

Խորհրդային Հայաստանն անասնաբուծական յերկիր է համարվում։ Մեր յերկրի բնակչության յուրաքանչյուր 100 շնչին 80 գլուխ խոշոր յեղջյուրավոր անասուն է ընկնում, և չենք հաշվում վոչխարն ու այծը։

Չնայած նրան, վոր Հայաստանն անասնաբուծական յերկիր է, բայց մեր գյուղացու անտեսության հիմքը կազմում է դաշտավարությունը։ Մեր գյուղացու ապրուստի գլխավոր աղբյուրը դաշտավարությունն է։ Ինչո՞ւ։ Վորովհետև մենք անասուններին չենք կարող այնպես խնամել ու կերակրել, վոր նրանք գյուղացուն զգալի oգուտ տան։

Մեր գյուղացին անասուններին «ձևի» համար է պահում։ Դրան ապացույց կարող է ծառայել այն փաստը, վոր նա մտածում է անասունների թիվն ավելացնելու և վոչ թե նրանց արդյունավետությունը բարձրացնելու մասին։ Այս տրամադրությանը հարկավոր է վերջ տալ։ Իսկ դրա համար հարկավոր է սովորել, անասուններին ուսումնասիրել։ Այս բանին դժվարությամբ են ձեռնարկում հասակավոր գյուղացիները, դժվարությամբ են հրաժարվում տարիների իրենց սովորություններից։ Հետևապես այս գործում մեծ դեր ունեն խաղալու գյուղի աշխատավոր յերիտասարդությունն ու պատանեկությունը։

Պիոներական կոլեկտիվը գյուղում շատ բան կարող է անել գյուղատնտեսության մեջ նոր ձևեր մտցնելու, ինչպես նաև անասուններին խնամելու գործում։

## ՀԱՐԿԱՎՈՐ Է ՓՈՔՐԻՑ ՍԿՍԵԼ

Պարզ է, վոր պիոներական կոլեկտիվի համար շատ դժվար է խոշոր անասուն ձեռք բերելն ու խնամելը, բացի այդ՝ նրան կերակրելն ու խնամելը մեծ ծախսերի հետ է կապված։ Վերցնենք հենց կովը։ Նրան խնամելու ընթացքում պիոներները շատ դժվարությունների կհանդիպեն։

Սակայն պիոներական կոլեկտիվը կարող է շատ հեշտությամբ այծ ձեռք բերել, խնամել և կերակրել, վորից նա կստանա շատ oգուտ։ Այծը էժան է, արժի 15 20 ռուբ.։ Բացի այդ՝ նա իր բոլոր հատկություններով շատ նման է կովին։ Այծը շատ քիչ կեր է պահանջում։ Ամեն մի կոլեկտիվ և կարող է մեկ կամ մի քանի այծ պահել։



Տեղական կարճասու այծ

digitised by A.R.A.R.@

## ԻՆՉՊԵՍ ՊԵՏՔ Է ԽՆԱՄԵԼ ԱՅԾԸ

Չնայած իր փոքր հասակին ու քաշին, այծն իր կաթնատվությամբ շատ քիչ է հետ մնում գյուղական սովորական կովերից, որոնք տարեկան 700 լիտր կաթ են տալիս։ Իսկ մեր տեղական այծը՝ սովորական կերակրման և խնամքի պայմաններում՝ տարեկան 400 լիտր կաթ է տալիս։ Յեթե մենք քիչ լավացնենք այծի կերն ու խնամքը, նա կարող է տարեկան մինչև 600 լիտր կաթ տալ։ Իսկ ազնվացեղ այծերը տարեկան 700-850 լիտր կաթ են տալիս։

## ԻՆՉՊԵՍ ԿԵՐԱԿՐԵԼ ԱՅԾԵՐԻՆ

Ինչպես կովն ու ոչխարը, այնպես էլ այծն արածում է։ Տնային այլ կենդանիների հետ համեմատած այծն ավելի սակավապետ է և կերերի մեջ խտրություն չի դնում։ Նա բավարարվում է կոշտ կերով, ծառի զանազան ճյուղերով, փշով, ավելով, յեղեգնով և այլն։ Այծն օրական 4-5 կիլո կանաչ, կամ 2 կիլո չոր խոտով բավարարվում է։ Բայց կաթ ստանալու համար՝ այծին պետք է ուժեղ կերեր էլ տալ, այն է՝ քուսպ, գարի և այլն։ Այծը շատ մաքրասեր կենդանի չէ։ Այծին կերակրելուց ու ախոռը մաքրելուց բացի, անհրաժեշտ է այծին



Ազնվացեղ այծ

ամէն օր սանրել, խոզանակով մաքրել։ Այդ բանը շատ կարեվոր է, որովհետեվ մաշկի մաքրելը ուժեղացնում է շնչառությունը և արյան շրջանառությունը, դրական կերպով է անդրադառնում այծի կաթնատվության վրա։ Այծին պետք է խուզել և հաճախ լողացնել տաք ջրով ու սապոնով, լողացնելուց հետո պետք է սրբել ու չորացնել։

Ամեն անգամ կթելուց առաջ, հարկավոր է այծի կուրծքը գոլ ջրով լվանալ և չոր սրբիչով չորացնել։ Ա. Լ. Ս.

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**ԽՆԿՈ ԱՊԵՐ — „Հովիվ Մկոն և կկուները"**, Պետհրատ, 1928 թ. գինը 25 կ.

Վաստակավոր մանկական գրող Խնկո Ապերն իր այս արժեքավոր փոխադրությամբ մի նոր նվեր է մատուցանում մանկական գրականությանը։ Ոչ միայն մանուկները, այլև պատանիները սիրում են ոչնչացնել թռչուններին, առանց հասկանալու այն մեծ օգուտը, որ տալիս են թռչունները արտերը վնասակար որդերից մաքրելու գործում։

Հովիվ Մկոն էլ շատ է սիրում հալածել կկուներին, որի հետևանքով շատանում են որդերը, որոնք չրավականանալով ծառի տերևներով՝ իջնում են վար և փչացնում են կովերի ուտելիքը։ Այդ դեռ բավական չէ. նրանք հազացնում են կովերին և թարախակալում նրանց աչքերը։

Մկոն այս բոլորից հետո չի միայն խելքի գալիս և հասկանում իր արած մեծ սխալը։ Հետաքրքրական, յերբ Մկոն մեծանում է և պապիկ դառնում, խրատում է իր թոռներին. **«Չլինի թե կկուներին վնաս տաք, նրանք մեր բարեկամներն են»։**

Գրքույկը գրված է ժողովրդական կենդանի լեզվով։ Գինը թանգ չէ։

**ԽՆԿՈ ԱՊԵՐ — „Հսկա բզեզն ու Քաջ ծիտիկը"**, Պետհրատ, 1928 թ գինը 50 կոպ.

Այս գրքույկի նյութը դարձյալ կենդանական աշխարհն է։ Հերոսը «քաջ» բզեզն է, որը շնորհիվ իր սուր եղջյուրի և պարծենկոտության՝ իրեն է յենթարկում ամբողջ կենդանիներին և իբրև բռնակալ կլանում նրանց ձագերին։ Դողում է առյուծը բզեզի տեսքից, դողում է անգամ կոկորդիլոսը նրա սուր եղջյուրից, թաքնվում են կապիկները վախից։ Բայց հանկարծ մի փոքրիկ ծիտ մեկ հարվածով մեջից կես է անում և կլանում պարծենկոտ բզեզին, ազատելով կենդանիներին «բռնակալից»։ Սակայն գինը թանգ է և անմատչելի։ **Միսիկ**





digitised by A.R.A.R.@

# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԵԼ ԲՈՒՅՍԵՐԻ ԿՈԼԼԵԿՑԻԱՆԵՐ (ՀԱՎԱՔԱԾՈՒՆԵՐ)

Բույսերն ուսումնասիրելու համար անհրաժեշտ է կազմել նրանցից առանձին հավաքածուներ, կամ՝ ինչպես ընդունված է ասել՝ կոլլեկցիաներ։ Այստեղ տալիս ենք կոլլեկցիաներ կազմելու հեշտ ձևը։

### Ինչպես հավաքել բույսերը, չորացնել և կազմել հերբարիում

Նախքան բույսերի հավաքմանն անցնելը, պետք է վորոշել, թե ինչ տեսակի բույսեր պիտի հավաքել կոլլեկցիաներ կազմելու համար։ Այս հարցին կարելի յե տարբեր պատասխաններ տալ. որինակ.

— Հավաքել շրջակայքի բոլոր խոտաբույսերը։

— Հավաքել թիթեռնածաղիկ բույսերը։

— Կազմել ցորենի արտի մեջ բուսած մոլախոտերի ու այլ խոտերի հավաքածու։

— Կազմել անտառի ծառերի տեսակների հավաքածու (այս դեպքում հավաքում են ծառի զանազան մասերից կտորներ և ամրացնում թղթի վրա) և այլն, և այլն։

Պարզ է, վոր մեզանից և վոչ մեկը հնարավորություն չունի վերևում թված հավաքածուների բոլոր տեսակները միաժամանակ կազմել։ Հարկավոր է ընտրություն կատարել և ընտրել նրանցից վորևե մեկը։

Ուղևորվելով ընտրած վայրը (դաշտ, անտառ, գետափ և այլն) պետք է սկսել հավաքման աշխատանքը։ Խոտաբույսերը զգուշորեն պետք է հանել հողից, այնպես, վոր նրանց արմատները, նուրբ ծաղիկներն ու այլ մասերը չվնասվեն։ Բույսը հողից հանում են սուր փայտով, դանակով կամ բրիչով։ Հավաքած բույսերն զգուշությամբ դարսում են բուսարկղի մեջ։ Բայց բուսարկղը մի անհարմարություն ունի, դա այն է, վոր նրա մեջ շատ բույսեր չի կարելի տեղավորել, յերկար, բարակ ցողուններն ու այլ մասերը նրա մեջ ծալծլվում, ջարդվում են։ Նման դեպքերում գործ են ածում բուսապանակը։ Բուսապանակը կազմված է յերկու տախտակներից, վորոնց միջև թղթի թերթերի արանքին դրվում են բույսերը, իսկ տախտակները կապվում են հատուկ գոտիներով։

Նուրբ ծաղիկներն ու բույսերը բուսապանակի մեջ դնելիս պետք է ուղղել, հակառակ դեպքում նրանք չորացնելու ժամանակ դժվար կուղղվեն։

Հավաքած բույսերը տուն բերելուց հետո՝ անցնում են չորացման աշխատանքներին։ Վերցնում են մի քանի թերթ լրագրի թուղթ (այդ թերթերի յերկարությունը սովորաբար լինում է 50 սանտիմետր, լայնությունը՝ 30 սանտիմետր) և դնում են մի հարթ տեղ, պատուհանի կամ սեղանի վրա։ Բուսարկղից կամ բուսապանակից բույսը հանելով պառկեցնում են թղթի վրա։ Պետք է աշխատել, վորքան հնարավոր է, բույսին բնական ձև տալ, ուղղել և այլն։ Կարելի յե շատ խիտ տերևներից մի քանիսը կտրել։ Կարելի յե նաև տերևների միջև թղթեր դնել, վորպեսզի նրանք չորանան։ Բույսը թղթի վրա ուղղելուց հետո՝ ծածկում են մի քանի թերթ նույն տեսակ թղթով, վորի վրա նորից բույս է դրվում և նորից ծածկվում է։ Վերջին բույսի վրա նորից թղթեր են դրվում, թղթի վրայից դրվում է մի հարթ տախտակ և վրան մի մեծ ծանրություն (քար, յերկաթ և այլն)։ Սա կլինի բուսաբանական ամենապարզ մամուլը, վորը շատ լավ հետևանքներ յե հասցնում։ Սակայն, վորպես բուսաբանական մամուլ գործ են ածվում նաև ավելի կատարելագործված ցանցային շրջանակները, կամ բուսաբանական ցանցը։ Այս դեպքում թղթերի մեջ դրված բույսերը դրվում են յերկու ցանցային շրջանակների միջև, վորից հետո շրջանակները հատուկ գոտիներով պինդ կապում են։ Շրջանակների վրա կամ դարձյալ ծանրություն են դնում, կամ կախում են, վորպեսզի բույսի միջի ջուրն ավելի արագ գոլորշիանա։ Բուսաբանական մամուլի կամ ցանցի մեջ բույսերը մնում են 1—2 որ, դրանից հետո բաց են անում, խոնավացած թղթերը փոխում և նորից դնում ցանցի մեջ։ Այդպես պետք է կրկնել այնքան ժամանակ, մինչև բույսերը կչորանան։ Ստուգելու համար, թե բույսերը, չորացել են, կամ վոչ, նախ պետք է նայել, արդյոք թղթերը, վորոնց մեջ գտնվում են բույսերը, դարձյալ խոնավ են թե չէ։ Բայց ավելի ճիշտ է վորոշել այսպես — բույսը վերցնել ներքևի ծայրից (արմատից վեր) և կանգնեցնել. յեթե նրա ցողունը կամ այլ մասերը թեքվեն, ծալվեն, կնշանակի, վոր բույսը դեռ լավ չի չորացել, իսկ յեթե չծալվեն և մնան ուղիղ կանգնած, կնշանակի արդեն չորացել է։ Բույսեր չորացնելու համար կան բազմաթիվ այլ ձևեր (ավազի մեջ, մահուդի մեջ և այլն), բայց մեզ համար ամենանպատակահարմարը բուսաբանական ցանցի մեջ թղթով չորացնելն է։

Բույսերը չորացնելուց հետո անցնում են հերբարիում կազմելու աշխատանքին։ Դրա համար վերցնում են հաստ, սպիտակ թղթի (կարտոնի) թերթեր (սովորաբար յերկարությունը 50 սմ. լայնությունը՝ 30 սմ.)։ Այդ թեր-

digitised by A.R.A.R.@

Թերից ամեն մեկի վրա գրվում է բույսը և նեղ թղթե ժապավեններով փակցվում թերթերին։ Ժապավենները պետք է այնպես փակցնել, վոր նրանց ծայրերը կպչեն թղթին, իսկ միջի մասը բույսին կպչի։ Կարելի յե նաև բույսի մի յերեսին գումի-արաբիկ քսելով ուղղակի փակցնել թղթին։ Յեթե բույսը հերբարիումի թղթից շատ փոքր է, այդ կարելի յե մի թերթի վրա փակցնել միևնույն ընտանիքի մի քանի բույսեր, իսկ յեթե ընդհակառակը, բույսը շատ մեծ է, պետք է այն կտրել, մասերի բաժանել կամ ծալել։ Բույսը թղթի վրա ամրացնելուց հետո, թերթի ձախ անկյունում (ներքևի) փակցվում կամ հենց ուղղակի թերթի վրա գրվում են անհրաժեշտ այն տեղեկությունները, վորոնք վերաբերում են այդ բույսին։ Ահա թե ինչ պիտի գրել.

№

Վոր ընտանիքին է պատկանում . . . .
Անունը (տեսակը) . . . . . . . . . .
Տեղական անունը . . . . . . . . . .
Միջավայրը (արտ, անտառ, հովիտ, դաշտ, այգի, լիճ, գետ և այլն) . . . . . .
Այլ տեղեկություններ . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . .
Ժամանակը . . . . . . . . . . . .
Հավաքողի ստորագրությունը . . . . .

Այս տեղեկությունները լրացնելու ժամանակ, և ընդհանրապես բույսերի հավաքածուները կազմելիս, պետք է միշտ խորհուրդներ հարցնել բնագետ-ուսուցչից և գյուղատնտեսից. նրանք շատ բանով կարող են օգնել ձեզ և թեթևացնել ձեր աշխատանքը։

Սակայն միայն սրանով հարցը չի փակվում։ Հարկավոր է հերբարիումը պահել իմանալ, հակառակ դեպքում ձեր ամբողջ աշխատանքը իզուր կկորչի։ Դրա համար հերբարիումի թերթերը պետք է դնել հատուկ կազմերի կամ ծալած հաստ թղթերի (ստվարաթղթի—կարտո՛ն) մեջ. իսկ դրանք էլ պետք է կողք-կողքի կանգնեցնել պահարանի վրա։ Չի կարելի հերբարիումի թերթերը միմյանց վրա դարսել, վորովհետև չորացած բույսը կարող է փչանալ և՛ բացի այդ՝ իրար վրա դարսած հավաքածուներից դժվար է օգտվել։

### Ինչպես Եքսպոնատ կազմել

Շատ հեշտ և հետաքրքիր է նաև այլ ձևի կոլլեկցիա կամ Եքսպոնատ կազմել բույսերից։ Այստեղ աշխատանքը շատ վորոշ է. Ամեն մի պիոներ կամ աշակերտ իր համար ընտրում է մի բույս։ Այս նպատակով ավելի լավ է ընտրել այնպիսի բույսեր, վորոնք քիչ թե շատ տնտեսական արդյունաբերական նշանակություն ունեն (բամբակ, վուշ, կամ ծառեր՝ շամի բոխի, կաղնի և այլն)։ Վերցնում են մի մեծ թերթ ստվարաթուղթ (կարտոն), փակցնում են վրան սպիտակ թուղթ։ Նրա վրա հերթով դասավորում, փակցնում են ընտրած բույսի մասերը։ Յենթադրենք ձեր ընտրածը լոբենի յե։ Դուք պետք է վերցնեք լոբենուց նրա մի բարակ ճյուղը, բնից մի բարակ շերտ, արմատից մի կտոր, ցողունի կեղևից, տերևներից։ Լոբենու ծաղկելուց հետո պիտի վերցնել և նրա ծաղիկը՝ ծաղկակիցներով, այնուհետև պտուղը և այլն, յեվ այդ բոլորը վորոշ դասավորությամբ փակցնել ստվարաթղթի վրա։ Եքսպոնատը հաջող լինելու համար պիոները, գարնան սկզբից մինչև ձմեռ, պետք է հետևի իր ընտրած բույսին, ծառին, և ինչ վոր նոր առաջանա՝ նրանից մի նմուշ կտրի և իր եքսպոնատի տախտակին փակցնի։ Մեծ նշանակություն է ունենում եքսպոնատն այն դեպքում, յերբ պարզ ցուցադրվում է՝ թե ինչ նյութեր են արտադրվում տրված բույսից (որինակ, խեժ, սերմից՝ յուղ, կեղևից կամ ցողունից՝ գործվածքներ, բնից՝ տախտակ և այլն)։

Եքսպոնատները չփչանալու համար կարելի յե ապակով պատած, տախտակից պատրաստած արկղների մեջ պահել։

Գագիկ



digitised by A.R.A.R.@

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**ՅԵ. ՏԱԼԱՑԿՈՎԱ — „Փոքրիկ Նկարարներ",**
*Թարգմ. Վ. Նորենց, 1928 թ. գինը 20 կ.*

Զարաճճի փոքրիկ Պետիկը ուզում է «մեծ» նկարչարի նման իրինց տունը ներկել։ Նա թանաքը խառնում է ջրի հետ, խոզանակը վերցնում է գործում, ոգնությամբ կանչում իր փոքր յեղբորը և ջանասիրությամբ սկսում է տան սպիտակ պատերը «ներկել»։ Իրենց բաժինն են ստանում և Պետիկի քույրը և խուճուճ մազերով շնիկը, վորոնք նույնպես ներկվում են։

„Փոքրիկ նկարարները" անպայման փոքրիկների սիրելի գիրքը կդառնա։ Գիրքը շատ գեղեցիկ կերպով նկարազարդված է։ Գինը 20 կոպեկ է։ Այնքան էլ թանգ չէ։

**ՌԱԽՄԱՆԻՆ — „Մոծակը",**
*Թարգմ. Վ. Նորենց, 1928 թ. գինը 25 կոպ.*

Գարնան գալու հետեվանքով զարթնում է բնությունը, աշխուժություն սկսվում կենդանական աշխարհում։ Վոչ միայն պատանիները, այլեվ փոքրերը սկսում են հետաքրքրվել բնությունով և կենդանական աշխարհով։ Այս գիրքը այդ տեսակետից շատ հետաքրքրական է, նա պատմում է զանազան կենդանիների մասին։ Ընթերցող մանկան առաջից, շնորհիվ հաջող պատմվածքի և համապատասխան նկարների, կինո-ժապավենի նման անցնում են՝ արագաշարժ մողեսը, կանաչավուն լորտուն, յերկարավուն կըռունկը և խորամանկ աղվեսը, վորոնց իրար ուտելու քաղցը սխորժակը խանգարում է մոծակը, վորը մի պինդ կըծելով աղվեսին, խուճապի յե մատնում բոլոր «վորսորդներին»։

**ԽԻՆԿՈ ԱՊԵՐ — „Նոր Շոգեշարժ",**
*Պետհրատ, 1928 թ. գինը 30 կ.*

Իսկապես «Նոր շոգեշարժը» մանկական մի գեղեցիկ խաղ է, վորը պատկերացնում է այն բոլոր ստուգաննները, վոր պիտի անցնի նոր շոգեշարժը մինչև շարժվելը։ Այս կարելի յե ոգտագործել նաև կոլլեկտիվ ընթերցանության համար։ Գրքույկի մեջ կան թե արձակ և թե չափածո տեղեր։ Անպայման այս խաղը մանուկների մեջ մեծ ընդունելություն կգտնի։

## ՄԱՏՆԵՐԻ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱ

Մատներին վիճակված է ամենանուրբ, բարդ և ճկունություն պահանջող աշխատանք կատարել, քան մարդու որգանիզմի մյուս մասերը։ Այդ պատճառով նրանք պետք է լավ զարգացած լինեն։ Ստորև տեղավորում ենք մատների ճկունության զարգացմանն օժանդակող մի քանի վարժություններ, վորոնք ամեն որ պիտի կատարել թե աջ և թե ձախ ձեռքի մատներով։

1. Ուղղահայաց կերպով պահել բոլորովին բացված ձեռքը և իրար սեղմել բոլոր մատները։ Հետո հեռացնել բութ մատը այնպես, վոր նա նույն հարթության վրա լինի ձեռքի հետ։ Դանդաղ շարժել այն յետ ու առաջ, ինչպես ճոճանակ, յուրաքանչյուր անգամ մոտենալով ափի $^{2}/_{3}$-ին և ապա ինչքան կարելի յե յետ տանել։



2. Սեղմեցեք բութ մատը ցուցամատին և ձեռքին զուգահեռ շարժեցեք ճկույթն այնպես, վոր նա ինչքան հնարավոր է հեռանա մյուս մատներից, և հետո պինդ մոտեցրեք այն նրանց։

3. Կատարեցեք նույն վարժությունը՝ տեղավորելով մի կողմում ճկույթն ու յերկրորդ մատը, իսկ մյուս կողմում՝ ցուցամատն ու միջնամատը։ Բութ մատն անշարժ է մնում։

4. Կատարեցեք նույն վարժությունը, մի կողմում ունենալով ցուցամատն ու բութ մատը, մյուս կողմում ունենալով մնացած յերեք մատները։

5. Յեթե մատները դժվարությամբ են յենթարկվում այդ վարժություններին՝ նրանց հարկավոր է ձգված դրության մեջ պահել փոքրիկ փայտի կտորի ոգնությամբ։

6. Յերբ այդ վարժությունները կատարված կլինեն մատներով վերև և թաթերով ներքև,—սկսում են կատարել հակառակը՝ մատները ներքև և թաթով վերև, ծալելով թեը ուղիղ անկյան տակ։

(Շարունակությունը շապկի 3-րդ յերեսում)

digitised by A.R.A.R.@

# ԽԵԼԱՑԻ ԺԱՄԱՆՑ ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԵՐԻՆ





ԲԵՐՈՒՄՆԵՐ №№ 3 և 4.

*7. Ուժեղ սեղմեցեք ձեր ձեռքը և ձգեցեք որքան կարող եք մատներն առանձին-առանձին։*

*8. Յեթե այդ դժվար կլինի մասնավորապես յերկրորդ մատի և ցուցամատի համար, նոր վարժվելու օրերին կարելի յե օգնության կանչել փայտի փոքրիկ կտորին։*

*9. Վերջին վարժությունը։ Պահելով ձեռքն ուղղահայաց, սեղմած մատներով, ստիպեցեք, որ յուրաքանչյուր մատն առանձին-առանձին շարժվի ափի ուղղությամբ։*

## ԽՆԴԻՐ № 1

*Յերկու տուրիստներ, վորոնք ճանապարհորդում եյին Կովկասում նստեցին քիչ հանգստանալու և ընթրելու։ Նրանցից մեկը հանեց իր ճամբորդական պայուսակից 5 շաքարահաց, իսկ մյուսը՝ յերեք։ Հենց վոր նրանք ուզում եյին ուտելուն անցնել, նրանց մոտեցավ անծանոթ մի ճանապարհորդ և ասաց.*

*— Ընկերներ, յես կորցրել եմ իմ ճամբորդական պայուսակը՝ ուտելեղենով։ Յես շատ եմ սոված և ուզում եմ ուտել, իսկ այստեղ, մոտքերում, վոչ մի տեղ ուտելիք չկա և չի վաճառվում Բայց չե՞ք լինի ինձ քիչ հաց տալու։ Յես ձեզ կվճարեմ։*

*Առաջին յերկու ճանապարհորդները համաձայնվեցին և նրանք ամբողջ հացը միացնելով բաժանեցին հավասար մասերի։ Ուտելուց հետո յերրորդ ճանապարհորդը առաջիններին վճարեց 8 կոպեկ։ Յերկու ընկերները չեյին իմանում, թե ինչպես բաժանեն այդ փողն իրար մեջ, վորովհետև ամեն մեկը տարբեր քանակությամբ հաց ուներ։ Վերջապես, նրանք վորոշեցին այսպես. նա, ով ուներ 5 շաքարահաց՝ ստանում է 5 կոպեկ, իսկ այն՝ ով ուներ 3 շաքարահաց՝ ստանում է 3 կոպեկ։*

*Արդյոք նրանք ճի՞շտ բաժանեցին փողը։*

## ԽՆԴԻՐ № 2

*Մեկ անգամ մեր Պետիկին հարցրինք, թե քանի տարեկան է իր հայրը։ Պետիկ պատասխանեց.*

*— Այ, դուք իմացեք։ Հայրս ու մայրս յերեք յերեխա ունեն. յես, Կարլենը և Մարոն։ Իմ ծնողների հասակների մեջ յեղած տարբերությունը այնքան է, ինչքան որ է իմ և Կարլենի, Կարլենի և Մարոյի հասակների տարբերությունը. իմ և Կարլենի հասակը բազմապատկած մեկը մյուսի վրա հավասար է հորս հասակին, Իսկ Կարլենի և Մարոյի հասակը յեթե մեկը մյուսի վրա բազմապատկենք կստացվի մորս հասակը։ Իսկ բոլորս միասին 90 տարեկան ենք։ Ահա իմացեք, թե ով քանի տարեկան է։*

## ԽՆԴԻՐ № 3

*Յերկու պիոներ մոտեցան Ջրհորին։*

*— Հետաքրքիր է իմանալ, ինչ խորություն ունի Ջրհորը, յեթե մոտս սանտիմետր լիներ՝ կչափեյի,— ասում է մեկը։*

*Իսկ մյուսը թե՝*

*— Յես կչափեմ նրա խորությունը առանց վորևե սանտիմետրի։ Իմացիր, յես վո՞նց կչափեմ։*

*Ապա իմացեք, վոնց եր մտածում չափել Ջրհորի խորությունը յերկրորդ պիոները։*

Խմբագրական կոլլեգիա՝ Ազնավուրյան Շ., Դավթյան Ս., Հարությունյան Պ., Միրզայան Հ., Մուշեղյան Տ., Վարդապետյան Վ.

Պատասխանատու խմբագիր՝ Շ. ԱԶՆԱՎՈՒՐՅԱՆ

Գլավլիտ № 759 բ. Տիրաժ 1,400 Պետհրատի 2-րդ տպարան Յերևանում Պ. 749

digitised by A.R.A.R.@



## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# ՊԻՈՆԵՐ

### ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ
ՕՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՅԵՎ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏԻ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ**

| | |
|---|---|
| *3 ամիսը* | *— 60 կոպ.* |
| *6 »* | *1 ր. 20 »* |

**ԱՌԱՆՁԻՆ ՀԱՄԱՐԸ ԱՐԺԵ 25 ԿՈՊ.**

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԴԻՄԵԼ ՀԵՏԵՎՅԱԼ ՀԱՍՑԵՅՈՎ—
ՅԵՐԵՎԱՆ, ՊԱՐԲՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԷՔՍՊԵԴԻՑԻԱՅԻՆ
(«ՊԻՈՆԵՐԻ» ՀԱՄԱՐ)

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՍՑԵՆ**—*Յերևան, Ռուբենի № 2*



digitised by A.R.A.R.@